Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2 (104)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ, 1941

digitised by A.R.A.R.@

# ԱՆԳԼԻԱՅԻ ԳԱՂՈՒԹՆԵՐԸ

## (ՀԱՄԱՌՈՏ ՏԵՂԵԿԱՆՔ)

Երկրորդ իմպերիալիստական պատերազմը, ինչպես և 1914—18 թ. թ. համաշխարհային պատերազմը, հանդիսանում է պատերազմ՝ հանուն գաղութների վերաբաժանման, հանուն աշխարհի վերաբաժանման։

Ընկ. Մոլոտովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի 5-րդ սեսսիայում ասաց. «Բրիտանական կայսրությունը, որի բուն ազգաբնակչությունը հասնում է 47 միլիոնի, տիրապետում է գաղութների՝ 480 միլիոն ազգաբնակչությամբ։ Ֆրանսիայի գաղութային կայսրությունը, որի բուն ազգաբնակչությունը 42 միլիոնից չի անցնում, ընդգրկում է ֆրանսիական գաղութների 70 միլիոն բնակիչներին։ Այս գաղութների տիրապետությունը, որը հնարավորություն է տալիս շահագործելու հարյուրավոր միլիոն մարդկանց, հանդիսանում է Անգլիայի և Ֆրանսիայի համաշխարհային տիրապետության հիմքը։ Վախը՝ այդ գա-



15171-54

digitised by A.R.A.R.@

ղությունների վերաբերող գերմանական պահանջների հանդեպ — ահա Անգլիայի և Ֆրանսիայի՝ Գերմանիայի դեմ ուղղված պատերազմի շարժառիթը, այն Գերմանիայի դեմ, որը վերջին ժամանակներս Վերսալյան պայմանագրի կազմալուծման հետևանքով լուրջ կերպով ուժեղացել է:

Համաշխարհային տիրապետությունը կորցնելու վախն է, որ թելադրում է Անգլիայի և Ֆրանսիայի կառավարող շրջաններին՝ Գերմանիայի դեմ պատերազմ հրահրելու քաղաքականություն վարել»:

Բրիտանական կայսրությունը խոշորագույն գաղութային պետություն է: Նա ստեղծված է նրա բազմամիլիոն ստրուկների քրտինքով և արյունով: Այդ հզորագույն իմպերիալիստական երկրի ստեղծման ուղին դա բռնագրավումների և թալանների ուղին է:

Իր ժամանակին, անգլիական երգիծաբան Ջոնաթան Սվիֆտը (1667—1745 թ. թ.) հիանալի կերպով նկարագրել է, թե ինչպես կատարվեց գաղութների այդ բռնագրավումները.

«Քամին ծովահենների շայկային քշում է որևէ, նրանց համար անհայտ, ուղղությամբ: Հանկարծ նավաստիներից մեկը կայմի կատարից ցամաք է նկատում: Ծովա-



հենները դուրս են գալիս ափ, որպեսզի զբաղվեն թալանով և ավազակություններով: Նրանք հանդիպում են անչար ազգաբնակչությանը, որը նրանց լավ ընդունելություն է ցույց տալիս: Երկրին տալիս են նոր կոչում. թագավորի անունից տիրապետում են նրան և որպես հուշանշան, տնկում են այնտեղ որևէ փտած տախտակ կամ թե՝ քար, սպանում են երկու կամ երեք դյուժին տեղացիներ, բռնի ուժով նրանցից մի քանիսին, որպես նմուշ, նավ են վերցնում և վերադառնում են հայրենիք... Այդպես առաջանում է մի նոր գաղութ ,որն իբր թե ձեռք է բերվում աստծո իրավունքով: Հենց առաջին պատեհ դեպքում այնտեղ նավեր են ուղարկվում. տեղացիները կամ արտաքսվում են, կամ ոչնչացվում: Նրանց առաջնորդներին ենթարկում են տանջանքների, որպեսզի նրանք հանձնեն իրենց ոսկինները: Ստեղծվում է լիակատար ազատություն, ամեն տեսակի ոչ-մարդկային վարմունքի համար, ամեն տեսակի անառակության համար. երկիրը ծածկվում է իր որդիների արյամբ: Եվ այդպիսի «ազնվաբարո» գործերով զբաղվող այդ անամոթ մսագործների շայկան է, որ ստեղծում է ժամանակակից գաղութները, որոնք նախասահմանված են իբր թե վերածելու վայրե-



digitised by A.R.A.R.@

նի-կռապաշտներին՝ քրիստոնյաների և մըտցընելու նրանց մեջ քաղաքակրթություն»:

Այսպես է նկարագրել Սվիֆտն իր հայրենակիցների գաղութային թալանը, կապիտալի նախնական կուտակման շրջանում: Սակայն այժմ էլ կարելի է ոչ-պակաս վառ օրինակներ բերել գաղութային ժողովուրդների թալանի և շահագործման մասին:

Անգլիան աշխարհի զանազան մասերում բռնագրավել է երկրներ, որոնց տարածությունը 140 անգամ ավելի է, քան ինքը: Իսկ նրա գաղութների ազգաբնակչությունը 10 անգամ գերակշռում է մետրոպոլի (սեփական Անգլիայի) ազգաբնակչության քանակից:

1914—18 թ. թ. պատերազմի հետևանքով, նա իր գաղութային տիրապետություններն ավելի ընդարձակեց. Բրիտանական կայսրությանը միացան Տոգոյից և Կամերունից որոշ մասեր— Տանգանյիկան, Հարավ-Արևմտյան Աֆրիկան, Նոր Գվինեայի մի մասը, Սամոա կղզիների մի մասը, Պաղեստինը, Անդրհորդանանը, Իրաքը և ուրիշները— ընդամենը ավելի քան մեկ միլիոն քառակուսի անգլիական միլ տարածություն, 9,6 միլիոն մարդ ազգաբնակչությամբ:

Ըստ կառավարման ձևի, Բրիտանական կայսրությունը բաժանվում է մի քանի մա-



սերի.— Միացյալ Թագավորություն, դոմինիոնները, Հնդկաստանը և Բիրման, գաղութները և պրոտեկտորատները, մանդատային տերիտորիաները:

**Միացյալ Թագավորություն**— դա Անգլիան է (մետրոպոլ), Հյուսիսային Իռլանդիայի հետ միասին: Միացյալ Թագավորությունը կոնստիտուցիոն միապետություն է: Պետության գլուխը համարվում է թագավորը: Օրենսդրական իշխանությունը պատկանում է պարլամենտին, որը բաղկացած է երկու պալատից:

**Գաղութներում** կառավարման գործն ամբողջովին գտնվում է նահանգապետների ձեռքին, որոնք նշանակվում են Անգլիայի կողմից: Անգլիական նահանգապետն այնտեղ հանդիսանում է լիակատար տերն ու տիրակալը:

**Հնդկաստանը** մյուս գաղութներից անջատված է և կառավարվում է հատուկ մինիստրի կողմից: Այդ մինիստրին է ենթարկվում նաև Բիրմա գաղութը: Օրենսդրական և գործադիր իշխանությունը Հնդկաստանում կենտրոնացված է Լոնդոնի կողմից նշանակված փոխարքայի ձեռքում:

**Պրոտեկտորատները** գաղութներից տարբերվում են նրանով, որ անգլիական իմպե-



digitised by A.R.A.R.@

րիալիստներն այնտեղ պահին նստեցնում են տեղական որևէ արքայիկի կամ իշխանիկի, որն ընդունում է Անգլիայի պրոտեկտորատը (հովանավորությունը)։ Իսկ իրականում, ի հարկե, պրոտեկտորատները կառավարվում են անգլիական խորհրդատուների կողմից, որոնց ձեռքերում այդ տեղական արքայիկները մարիոնետներ են հանդիսանում։

**Մանդատային տերիտորիաները**— դրանք այն մարզերն են, որոնք առաջին իմպերիալիստական պատերազմի ընթացքում խլվեցին Գերմանիայից և Թյուրքիայից և, համաձայն Վերսալյան պայմանագրի, անցան Ազգությունների Լիգայի տրամադրության տակ։ Ազգերի Լիգան ինքն իր կողմից այդ երկրների կառավարելու մանդատը հանձնեց հաղթող երկրներին՝ Անգլիային, Ֆրանսիային, Յապոնիային և Բելգիային։ Այդ խաղը Ազգերի Լիգայի կողմից խաբեբայություն էր, հիմնված՝ այն բանի վրա, որպեսզի «հոգատարություն՝ տեղացիների մասին» դրոշի անվան տակ գաղութային թալաններ կատարվեն։

**Դոմինիոնները**— ինքնակառավարվող գաղութներ են, որոնք ունեն իրենց պարլամենտները. դոմինիոններ հանդիսանում են՝ Կանադան, Ավստրալիան, Նոր Զելանդիան,



Իռլանդիան և Հարավ-Աֆրիկյան Միությունը։

Նյուֆաունդլենդը, մինչև վերջին ժամանակներս դոմինիոն էր հանդիսանում, և միայն 1933 թ. ֆինանսական սնանկության հետևանքով կորցրեց իր դոմինիոնի իրավունքը և փաստորեն վերածվեց գաղութի։ Նա այժմ կառավարվում է Լոնդոնից՝ անգլիական կառավարության կողմից նշանակված նահանգապետի և 6 լիազորների միջոցով։

Համաձայն 1931 թ. ընդունված դրույթի, դոմինիոնները հավասարեցված են Միացյալ Թագավորության իրավունքներին և համարվում են Անգլիայի միութենական պետություններ։ Նրանք իրավունք ունեն հյուպատոսներ ուղարկելու օտարերկրյա պետությունները։ Դոմինիոնների հետ կապ ունենալու համար, անգլիական մինիստրների խորհրդում գոյություն ունի հատուկ մինիստր— դոմինիոնների գործերով։ Ձևականորեն դոմինիոնները կարող են Անգլիան պատերազմ մտնելու դեպքում պահպանել չեզոքություն։ Բրիտանական կայսրության անվանական գլուխը— թագավորը— հանդիսանում է դոմինիոնների գեներալ-նահանգապետը։



digitised by A.R.A.R.@

## ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

| | Տարածությունը (1000 քառակուսի կիլոմետր.) | Ազգաբնակչությունը (1000 մարդ) | Կախումի տեսակը |
|---|---|---|---|
| Եվրոպայում | | | |
| Իրլանդիա (Էյրե) | 69 | 3000 | Դոմինիոն *) |
| Ջիբրալթար | 5 ք. կ. | 20 | գաղութ |
| Մալթա | 0, 3 | 252 | » |
| Ասիայում | | | |
| Հնդկաստան | 4079 | 375. 000 **) | գաղութ |
| Բիրմա | 597-ից ավելի | 14. 667 | » |

*) Իրլանդիան չնայած որ դոմինիոն է հաշվվում, սակայն իրականում այդպիսին չի հանդիսանում:

**) Բիրմայի հետ միասին:



| | Տարածությունը (1000 քառակուսի կիլոմետր.) | Ազգաբնակչությունը (1000 մարդ) | Կախումի տեսակը |
|---|---|---|---|
| Բրիտանական Մալայա | 136 | 5. 138 | գաղութ և պրոտեկտ. |
| Ցեյլոն | 66 | 5. 312 | գաղութ |
| Ադեն և Պերիմ | 24, 8 | 152 | » |
| Բրիտանական Բորնեո | 191 | 935 | գաղութ և պրոտեկտորատ |
| Հոնկոնգ | 1, 01 | 1800 | գաղութ |
| Կիպրոս | 9, 3 | 373 | » |
| Պաղեստին | 26 | 1300 | Մանդատային տերիտորիա |
| Անդրհորդանան | 90 | 300 | մանդ. տերիտ. |
| Հադրամաուտ | 151 | 120 | պրոտեկտորատ |



digitised by A.R.A.R.@

| | Տարածու-թյունը (1000 քառակուսի կիլոմետր.) | Ազգաբնակ-չությունը (1000 մարդ) | Կախումի տեսակը |
|---|---|---|---|
| Բահրեյնյան կղզիներ | 552 | 120 | պրոտեկտորատ |
| Կովեյթ | 5 | 80 | » |
| **Աֆրիկայում** | | | |
| Գամբիա | 11 | 200 | գաղութ և պրոտեկտորատ |
| Ոսկե-Ափ | 208 | 3270 | » » |
| Ս. Հեղինեի կղզի | 0, 2 | 4 | գաղութ |
| Սիերա-Լեոնե | 80 | 1540 | գաղութ և պրոտեկտորատ |
| Սեյշելյան կղզիներ | 0, 4 | 30 | գաղութ |
| Մավրիկիոսի կղզի | 2, 1 | 406 | » |
| Հարավ-Աֆրիկական Միություն | 1227 | 9797 | դոմինիոն |



| | Տարածու-թյունը(1000 քառակուսի կիլոմետր). | Ազգաբնակ-չությունը (1000 մարդ) | Կախումի տեսակը |
|---|---|---|---|
| Նիգերիա | 965 | 20000 | գաղութ և պրոտեկտորատ |
| Սուդան | 2, 5-ից ավելի | 6000-ից ավելի | Անգլիայի և Եգիպտոսի համատեղ կառավարում |
| Բասուտոլենդ | 30 | 650 | պրոտեկտորատ |
| Բրիտանական Սոմալի | 176, 2 | 347 | » |
| Բեչուանալենդ | 712 | 160 | » |
| Կենիա | 582, 4 | 3334 | գաղութ և պրոտեկտորատ |
| Ուգանդա | 305 | 3711 | պրոտեկտորատ |



digitised by A.R.A.R.@

| | Տարածությունը (1000 քառակուսի կիլոմետր.) | Ազգաբնակչությունը (1000 մարդ) | Կախումի տեսակը |
|---|---|---|---|
| Հյուսիսային Ռոդեզիա | 746 | 1393 | պրոտեկտորատ |
| Հարավային Ռոդեզիա | 385 | 1212 | գաղութ |
| Զանզիբար | 3 | 235 | պրոտեկտորատ |
| Նյասսալենդ | 97 | 1611 | » |
| Սվազիլենդ | 17 | 126 | » |
| Հարավ-Արևմտյան Աֆրիկա | 835 | 270 | մանդատային տերիտորիա |
| Բրիտանական Տոգո | 34 | 290 | » » |
| Բրիտանական Կամերուն | 80 | 780 | » » |
| Տանգանյիկա | 946 | 5140 | » » |
| Ամերիկայում | | | |
| Նյուֆաունդլենդ | 422 | 293 | — |



| | Տարածությունը (1000 քառակուսի կիլոմետր.) | Ազգաբնակչությունը (1000 մարդ) | Կախումի տեսակը |
|---|---|---|---|
| Կանադա | 9542 | 11000-ից ավելի | դոմինիոն |
| Բարբադոս | 0,43 | 191 | գաղութ |
| Բերմուդյան կղզիներ | 0,05 | 30 | » |
| Անտիգուա, Դոմինիկա, Մոնսերրա, Բարբուդա, Ռեդոնդա, Սան-Կիտս, Նևիս, Անգիլյա և Վիրգինյան կղզիներ | 1, 8 | 138 | գաղութ |



digitised by A.R.A.R.@

| | Տարածությունը (1000 քառակուսի կիլոմետր.) | Ազգաբնակչությունը (1000 մարդ) | Կախման տեսակը |
|---|---|---|---|
| Վինդվարդյան կղզիներ | 1, 3 | 213 | Գաղութ |
| Բահամյան կղզիներ | 11, 4 | 66, 9 | » |
| Յամայկա | 11, 5 | 1162 | » |
| Գոնդուրաս | 22 | 56 | » |
| Տրինիդադ և Տոբագո | 5, 1 | 456 | » |
| Բրիտանական Գվիանա | 232 | 340 | » |
| Ֆոլկլենդյան կղզիներ | 12, 5 | 3 | » |
| Ավստրալիայում և Օվկեանիայում | | | |
| Ավստրալիա | 7704 | 6867 | դոմինիոն |



| | Տարածությունը (1000 քառակուսի կիլոմետր.) | Ազգաբնակչությունը (1000 մարդ) | Կախման տեսակը |
|---|---|---|---|
| Նոր Զելանդիա | 268 | 1602 | դոմինիոն, |
| Նոր Գվինեա | 236 | 670 | մանդատ. տերիտոր. |
| Պապուա | 234 | 280 | գաղութ |
| Ֆիջի | 19 | 205 | » |
| Սողոմոնյան կղզիներ | 28 | 95 | » |
| Կուկի կղզիներ, Տոկելաու և ուրիշները | 1, 6 | 18 | » |
| Գիլբերտի և Էլլիսի կղզիներ | 0, 5 | 35 | » |
| Տոնգա | 1, 0 | 32 | » |
| Արևմտյան Սամոա | 2, 9 | 58 | մանդատային տերիտորիա |



digitised by A.R.A.R.@

***

Անգլիան զրկված է հումքի և պարենի կարևոր տեսակներից։ Նա ներմուծում է ըսպառվող նավթի 93 տոկոսը, կաուչուկի 100 տոկոսը, բամբակի 100 տոկոսը, գունավոր մետաղների 95 տոկոսը, բրդի 75 տոկոսը, անագի 95 տոկոսը, ինչպես նաև՝ ալյումին, պղինձ, նիկել, կապար, ցինկ և ուրիշ մետաղներ։ Անգլիան կախում ունի անդրծովյան երկրներից նաև պարենի մատակարարման տեսակետից։ Այսպես օրինակ, նա ներմուծում է սպառվող ցորենի մինչև 80 տոկոսը, մսի մոտ 60 տոկոսը, կարագի 90 տոկոսը, շաքարի 80 տոկոսը, թեյի, կակաոյի, սուրճի 100 տոկոսը։ Ընդհանրապես, Անգլիան իրեն անհրաժեշտ պարենի 70 տոկոսը ներմուծում է այլ տեղերից։

Վերջին 25 տարիների ընթացքում Անգլիայի ներմուծումն իր գաղութներից զգալի չափով աճել է։ Այսպես օրինակ, եթե 1913 թ. Բրիտանական անդրծովյան տիրապետությունների բաժինն անգլիական ողջ ներմուծման մեջ կազմում էր համարյա 25 տոկոս, ապա 1938 թ. հասավ 40,4 տոկոսի, այսինքն՝ ավելացավ համարյա մեկ ու կես անգամ։

Անշուշտ, պատերազմի կապակցությամբ, գաղութների տեսակարար կշիռն Անգլիային



համքով և պարենով մատակարարելու գործում կաճի։ Լոնդոնն իր գաղութային կայսրության պլոդուկցիան գնում է ցածր, ռեկվիզիցիոն գներով, տարիներ առաջ և դեռ իր արմատի վրա։ Սակայն, ինքնին հասկանալի է, Անգլիան կարող է ստանալ այս բոլոր ապրանքները՝ իր գաղութային տիրապետությունների հետ ուժեղ կապ պահպանելու պայմանով միայն։ Այդ պատճառով էլ անդրծովյան հումքի և պարենի ստանալն Անգլիայի կողմից այժմ, ինչպես երբեք կախված է բրիտանական կոմունիկացիաների ապահովությունից։

Բրիտանական գաղութները՝ անգլիական կապիտալների գործադրման համար մեծ ասպարեզ են հանդիսանում։ Անգլիական կապիտալների ընդհանուր գումարը, որը ներդրված է բրիտանական տիրապետություններում, կազմում է 2 միլիարդ ֆունտ ստերլինգից ավելի։

Անգլիական խոշորագույն կապիտալ ներդրումներն ընկնում են Հնդկաստանի հաշվին (մոտ մեկ միլիարդ ֆունտ ստերլինգ), Կանադայի հաշվին (525 միլիոն ֆունտ ստերլինգ), Ավստրալիայի հաշվին (494 միլիոն ֆունտ ստերլինգ) և այլն։ Անգլիական կապիտալը հանդիսանում է իր գաղութների տերն ու տիրակալը։ Նրան են պատկանում



digitised by A.R.A.R.@

նրանց բոլոր հարստությունները — պլանտացիաները, երկաթուղիները, ածխահանքերը, պղնձահանքերը և այլն։

Բրիտանական տիրապետությունները ցրված են ամբողջ աշխարհում։ Նրանք գտնվում են Ամերիկայում, Ասիայում, Աֆրիկայում, Ավստրալիայում, երեք օվկիանոսների վրա — Ատլանտյան, Հնդկական և Խաղաղ։ Այդ տիրապետությունների շուրջը բախվում են բազմաթիվ իմպերիալիստական հակառակորդների շահերը։

Անգլիական գաղութները մետրոպոլին միացնող գլխավոր ծովային ճանապարհներն անցնում են Ջիբրալթարի նեղուցով՝ դեպի Միջերկրական ծովի արևմտյան մասը և Սուեզի ջրանցքով՝ նրա արևելյան մասը։ Հատկապես այստեղ են սկսվում անգլիական տիրապետությունները և այստեղից են նրանք տարածվում դեպի հարավ և արևելք։ Միջերկրական ծովի և Սուեզի ջրանցքի միջև անցնող ուղին կապում է Անգլիային Մերձավոր և Միջին արևելքի հետ, Հնդկաստանի, Մալայայի, Ավստրալիայի, Չինաստանի և Ճապոնիայի հետ։ Ատլանտյան օվկիանոսից դեպի Միջերկրական ծովը տանող մուտքի մոտ գտնվում է անգլիական ռազմա-ծովային խոշորագույն բազան — Ջիբրալթարը։



Ջիբրալթարն իրենից ներկայացնում է 429 մետր բարձրությամբ մի մեծ ժայռ կազմող թերակղզի։ Այդ ժայռը միանում է հողմաբեր ավազուտների նեղ պարանոցով Պիրենյան թերակղզու հետ։ Նրա մակերեսը հավասար է 5 ք. կիլոմետրի, ազգաբնակչությունը 20.000 մարդու։ Ջիբրալթարի և Աֆրիկական ափի միջև ընկած հեռավորությունը կազմում է 26 կիլոմետր։ Ահա թե ինչու անգլիական այդ ամրոցը տիրապետում է նեղուցի վրա։ Ջիբրալթարն ուժեղ ամրացված է։ Նավահանգիստը կարող է տեղավորել մեծ նավատորմիղ։ Սակայն ավիացիայի և հեռուն կրակող հրետանու ժամանակակից զարգացման պայմաններում Ջիբրալթարն այժմ այլևս չի հանդիսանում անխոցելի այնպես, ինչպես առաջ։

Սուեզի ջրանցքը, որն անցնում է Եգիպտոսով և միացնում է Միջերկրական ծովը Կարմիր Ծովի հետ, երթևեկության համար բացվել է 1869 թվին։ Ջրանցքի երկարությունը հավասար է 173 կիլոմետրի, լայնությունը՝ 100—135 մետրի։ Ամենամեծ խորությունը — 13 մետր է։ Սուեզի ջրանցքն Անգլիայի համար կարևոր նշանակություն ունի. նա Անգլիայից դեպի Հնդկաստան տանող ճանապարհը Աֆրիկայի ամենահա-



digitised by A.R.A.R.@

րավային կետով՝ Բարե-Հուսո հրվանդանով անցնող ճանապարհի համեմատությամբ կրճատում է համարյա 2 անգամ։

1937 թ. այդ ջրանցքով անցնող նավերի 47 տոկոսն անգլիական էր։ Իտալիայի կռվի մեջ մտնելուց հետո, անգլիական նավերի մեծագույն մասն ստիպված են անցնել Բարե-Հուսո հրվանդանի մոտով, պտույտ գործելով Աֆրիկայի ողջ հարավային մասի շուրջը։ Ջրանցքն Անգլիայի համար ունի հսկայական տնտեսական նշանակություն։ Նրանով են անցնում Հնդկաստանից, Ավստրալիայից, Բիրմայից, Մալայայից և արևելքի բրիտանական այլ գաղութներից Անգլիա ուղևորվող հումքով և պարենով բեռնված նավերի մեծագույն մասը։ Անգլիան Սուեզի ջրանցքը պաշտպանում է ռազմա-ծովային և օդային բազաների մի ամբողջ սիստեմի միջոցով։ Եգիպտոսի գլխավոր նավահանգստում — Ալեքսանդրիայում, որը գտնվում է Միջերկրական ծովի արևելյան մասում, կա բրիտանական ռազմա-ծովային բազա։ Հարմար նավահանգիստը թույլատրում է ընդունել ամենախոշոր տոննաժի նավերը։ Միջերկրական ծովի կողմից, Սուեզի ջրանցքի մուտքի մոտ, գտնվում է եգիպտական նավահանգիստ՝ Պորտ-Սաիդը, որտեղ անգլիացիք ունեն



նավերին մատակարարելու բազա, նավթի պահեստներ և ռազմական այլ կառուցումներ։ Հայֆայում (Պաղեստին) և Ֆամագուստում (Կիպրոս կղզու վրա) գտնվող Անգլիայի ռազմա-ծովային բազաները հնարավորություն են տալիս Սուեզի ջրանցքի մուտքը լավ պահպանելու։

Ձևականորեն Սուեզի ջրանցքը պատկանում է Եգիպտոսին, որի տերիտորիայով էլ նա անցնում է։ Սակայն եգիպտական կառավարությունը ջրանցքի շահագործման իր իրավունքները հանձնել է միջազգային «Սուեզի ջրանցքի կամպանիային»։ Անգլիային հաջողվել է գնել այդ կամպանիայի ակցիաներից այնպիսի քանակությամբ, որը նրան թույլատրում է լինել ջրանցքի փաստական տերը։ Սուեզի ջրանցքը խոշորագույն նշանակություն ունի նաև Իտալիայի համար, քանի որ Իտալիան նրա վրայով էր մինչև պատերազմի սկսվելը, Արևելյան Աֆրիկայի ու իր գաղութների հետ կապ պահպանում (Էրիտրեա, Իտալական Սոմալի և Հաբեշըստան)։

Կարմիր ծովից դեպի Հնդկական օվկիանոս տանող ճանապարհը պաշտպանում է անգլիական ամրոց և ռազմա-ծովային բազա Ադեն։



digitised by A.R.A.R.@

Անգլիայի Արևելքում գտնվող խոշորագույն ռազմա-ծովային բազաներից մեկը հանդիսանում է Սինգապուրը: Բրիտանական ռազմա-ծովային և օդային նավատորմը հենվելով Սինգապուրի վրա, կարող է պաշտպանել Հնդկաստանի, Բրիտանական Մալայայի, Հոլանդական Հնդկաստանի, Ավստրալիայի մուտքերը: Սինգապուրը հանդիսանում է Խաղաղ օվկիանոսի բանալին՝ արևմմուտքից և Հնդկական օվկիանոսի բանալին՝ արևելքից:

## ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՖՐԻԿԱՅՈՒՄ ԵՎ ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

19-րդ դարի վերջերին Աֆրիկան փաստորեն արդեն բաժանված էր խոշոր կապիտալիստական պետությունների միջև—Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Իտալիայի, Պորտուգալիայի և Բելգիայի: Անգլիան բռնազրավեց Եգիպտոսը, Սուդանը, Արևելյան Աֆրիկան, Ուհանդան, Զանզիբարը, Արևմտյան Աֆրիկան, Կենիան և ողջ Հարավային Աֆրիկան:

1914—18 թ. թ. պատերազմից հետո, Անգլիան ստացավ Աֆրիկայում գտնվող գերմանական գաղութների մեծամասնությունը— Կամերունից մի մաս, Տոգոյից մի մաս, Տանգանյիկան, Հարավ-Արևմտյան



Աֆրիկան (որն այժմ Անգլիան հանձնել է Հարավ-Աֆրիկական Միությանը): Տանգանյիկան իրեն միացնելուց հետո, Անգլիային հաջողվեց ստեղծել իր տիրապետությունների այնպիսի մի համատարած գոտի, որը հատում է աֆրիկական կոնտինենտը, հարավից դեպի հյուսիս և հասնում է Արաբիայի և Իրաքի վրայով՝ մինչև Հնդկաստանը:

Անգլիան իր աֆրիկական գաղութներից արտահանում է հումույթի և պարենի զանազան տեսակներ: Եգիպտոսը և Անգլո-Եգիպտական Սուդանը տալիս են Անգլիային բարձրորակ բամբակ, Հարավ-Աֆրիկական Միությունը՝ ոսկի, ադամանդներ և բուրդ, Ոսկե-Ափը և Նիգերիան տալիս են կակաոյի արտադրության կեսից ավելին, Հյուսիսային Ռոդեզիան՝ պղինձ, Նիգերիան՝ անագ: Երկաթահանքերի խոշորագույն մատակարարողը Սիերրա-Լեոնեն է հանդիսանում: Ոսկե-Ափում արդյունահանվում է մարգանեց և այլն: Անգլիայի և Իտալիայի միջև տարվող պայքարի կենտրոնն այժմ հանդիսանում է Աֆրիկայի արևելյան մասը՝ Եգիպտոսը, Անգլո-Եգիպտական Սուդանը, Կենիան, Բրիտանական Սոմալին:

Եգիպտոսը գտնվում է Աֆրիկայի հյուսիսարևելյան մասում, զբաղեցնում է համարյա



digitised by A.R.A.R.@

մեկ միլիոն քառակուսի կիլոմետր տերիտորիա։ Նրա ազգաբնակչությունը հավասար է 16 միլիոնի։ Ձևականորեն անկախ պետություն է, որի գլուխը կանգնած է Թագավոր Ֆարուկը։ Իսկ փաստորեն, նա գտնվում է Անգլիայի վերահսկողության տակ։ Ազգաբնակչության մեծ մասն ապրում է Նեղոս գետի հովտում և գետաբերանում։ Եգիպտոսը համդիսանում է երկրագործական երկիր։ Որպես բամբակի մատակարարող, Եգիպտոսը 4-րդ տեղն է գրավում աշխարհում։ Անգլիան շահագրգռված է Եգիպտոսով, որպես իր տեքստիլ արդյունաբերության կարևոր աղբյուրի։ Սակայն ավելի կարևոր է Եգիպտոսի ստրատեգիական նշանակությունը, քանի որ նա ընկած է Եվրոպան՝ Ասիային և Աֆրիկային միացնող համաշխարհային ռազմա-ծովային և առևտրական ճանապարհների միջև։

Մինչև 1922 թիվը, Եգիպտոսն անգլիական պրոտեկտորատ էր։ Դրանից հետո Անգլիան նրան ձևականորեն անկախություն ընձեռնեց։ Սակայն 1936 թ. պայմանագրի համաձայն, Եգիպտոսի կարևոր ռազմա-ստրատեգիական օբեկտներն անցան անգլիացիների ձեռքը. Անգլիան ստացավ Եգիպտոսում իր զորքերը պահելու իրավունք, նրա ռազ-



մական բազաներից, աերոդրոմներից և հաղորդակցության ճանապարհներից օգտվելու իրավունք։

Իտալիայի պատերազմի մեջ մտնելուց հետո և Սուեզի ջրանցքին վտանգ սպառնալու կապակցությամբ, անգլիացիք Եգիպտոսում կենտրոնացրին լրացուցիչ ցամաքային և ծովային ուժեր։ Ալեքսանդրիա ուղարկվեցին մի շարք նավեր, գաղութային զորքեր։ Անգլիայի, Եգիպտոսում գտնվող գաղութային բանակը բաղկացած է հնդկացիներից, ավստրալիացիներից, նոր-զելանդացիներից և ուրիշներից։

Իտալական մամուլի տեղեկություններով այդ բանակն այժմ հաշվվում է 300.000 մարդ։ Եգիպտոսի պաշտպանության գործում անգլիացիք հանդիպում են մեծ դժվարությունների։ Եգիպտոսը ձգտում է լիակատար անկախության Անգլիայից։ Չնայած այն բանին, որ Եգիպտոսի և Անգլիայի միջև գոյություն ունի ռազմական դաշինք, այնուամենայնիվ, Եգիպտոսը մինչև այժմ էլ դեռ Իտալիայի դեմ կռիվ չի սկսել, այլ միայն խզել է դիպլոմատիկական հարաբերությունները նրա հետ։

Հակաբրիտանական տրամադրությունները Եգիպտոսում շատ ուժեղ են։ Աֆրիկայում



digitised by A.R.A.R.@

տարվող պատերազմի սկզբից մինչև այժմ Եգիպտոսում տեղի է ունեցել երեք կառավարական կրիզիս։ Այդ կրիզիսներն առաջացել են Իտալիային պատերազմ հայտարարելու հարցի վերաբերյալ ղեկավար շրջաններում գոյություն ունեցող տարաձայնությունների հետևանքով։

Եգիպտոսի ժողովրդական մասսաները չեն ուզում պատերազմել իմպերիալիզմի շահերի համար։ Նրանք պայքար են տանում իրենց երկրի լիակատար անկախության համար։

Եգիպտոսից հարավ ընկած է **Անգլո-Եգիպտական Սուդանը** (տերիտորիան՝ 2,5 միլիոն քառակուսի կիլոմետրից ավելի, ազգաբնակչությունը՝ 6 միլիոնից ավելի), որը համարվում է իբր թե Անգլիայի և Եգիպտոսի «համատեղ տիրապետություն»։ Սակայն, հասկանալի է, որ Եգիպտոսն ինքը լինելով Անգլիային ենթարկվող, Սուդանում ոչ մի իշխանություն չի կարող ունենալ։ Սուդանի լիակատար տերը հանդիսանում է անգլիական գեներալ-նահանգապետը։ Այնտեղ գտնվում են անգլիական զորքեր։

Բամբակի բարձրորակ տեսակների արտադրության տեսակետից՝ Եգիպտոսից հետո, Սուդանը կայսրության մեջ երկրորդ տեղն է գրավում։



**Կենիա**— Արևելյան Աֆրիկայում գտնվող անգլիական գաղութ է։ Նրա տարածությունը հավասար է 582,4 հազար քառակուսի կիլոմետրի, ազգաբնակչությունը՝ 3.334 հազար մարդու։ Անգլիան Կենիայից ստանում է բամբակ, բուրդ, սուրճ, թեյ, շաքարեղեգն, ոսկի։

Հողերի մեծ մասը գտնվում է անգլիացիների ձեռքին։ Բնիկ ազգաբնակչությունն ըստրկական կարգով աշխատում է անգլիական պլանտատորներին պատկանող դաշտերում։

**Բրիտանական Սոմալի** (տարածությունը՝ 176,2 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 374 հազար մարդ)։ Նրան 1940 թ. օգոստոսին գրավեցին իտալական զորքերը։

**Տանգանյիկան** (տերիտորիան՝ 946 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 5 միլիոնից ավելի)—նախկին գերմանական գաղութ, ներկայումս Անգլիային պատկանող մանդատային տերիտորիա։Անգլիան հենց հատկապես անհանգստանում է Տանգանյիկան վերադարձնելու գերմանական պահանջներից։ Տանգանյիկայի կորստի դեպքում կխախտվեր Աֆրիկայի անգլիական տիրապետությունների համատարած գոտին։



digitised by A.R.A.R.@

Կենիայի և Հարավ-Աֆրիկական Միության միջև ընկած է անգլիական տիրապետությունների հետևյալ խումբը.— Ուգանդա, Զանզիբար, Նյասսալենդ, Հարավային և Հյուսիսային Ռոդեզիա:

Լավագույն հողերն այդ գաղութներում բռնագրավել են անգլիացիք։ Նրանց են պատկանում բամբակի հարուստ պլանտացիաները՝ Ուգանդայում, մեխակի պլանտացիաները՝ Զանզիբարում, ցիտրուսային պլանտացիաները՝ Հարավային Ռոդեզիայում։ Հյուսիսային Ռոդեզիայում կան պղնձի հանքեր, իսկ Հարավային Ռոդեզիայում՝ արդյունահանվում է ոսկի։

Արևմտյան Աֆրիկայում գտնվում են հետևյալ բրիտանական տիրապետությունները.

Նիգերիա, Ոսկե-Ափ, Սիերրա-Լեոնե, Համբիա, նախկին գերմանական գաղութ Կամերունի որոշ մասը, Տոգոյի որոշ մասը։ Այս գաղութներից Անգլիան ստանում է արմավի յուղ, կակաո, գետնանկույզներ և այլն։ Կակաոյի արտահանման տեսակետից Ոսկե-Ափը գրավում է աշխարհում առաջին տեղը։ Այս գաղութները հարուստ են նաև ոսկու, անագի, մարգանեցի հանքերով։

Հարավ-Աֆրիկական Միություն. Աֆրիկայի հարավային մասը գրավում է բրիտա-



նական դոմինիոն՝ Հարավ-Աֆրիկական Միությունը։ Նրա տարածությունը հավասար է 1.227 հազար քառակուսի կիլոմետրի, ազգաբնակչությունը՝ 9.797 հազար մարդու։ Երկու օվկիանոսներով ողողվող (Ատլանտյան և Հնդկական) Հարավ-Աֆրիկական Միությունը կարևոր նշանակություն ունի։ Նա՝ Հնդկաստան, Ավստրալիա, Նոր-Զելանդիա և Հեռավոր Արևելք տանող մի ավելորդ ճանապարհ է ապահովում (ճիշտ է, ավելի երկար, քան Սուեզի ջրանցքի միջով)։

Հարավ-Աֆրիկական Միությունով Անգլիան շահագրգռված է նաև տնտեսական տեսակետից։ Ոսկու արդյունահանման տեսակետից Հարավ-Աֆրիկական Միությունն աշխարհում գրավում է առաջին տեղը։ 1939 թվին Հարավ-Աֆրիկական Միությունը ոսկու արդյունահանման ռեկորդային արդյունքներ ստացավ՝ 12 միլիոն ունցիա, 95 միլիոն ֆունտ ստերլինգ արժողությամբ։ Ոսկու արդյունահանման կենտրոնը Տրանսվալն է։ Բացի ոսկուց, Հարավ-Աֆրիկական Միությունն ունի քարածուխ, նավթ, մարգանեց, քրոմ, անագ։ Հարավ-Աֆրիկական Միությունն Անգլիայի խոշորագույն բուրդ մատակարարողն է։



digitised by A.R.A.R.@

Անգլիայի շահագրգռվածությունը, նրա համար կարևոր այս դոմինիոնում, անգլիական իմպերիալիստներին հատկապես ըզգայուն է դարձնում Հարավ-Աֆրիկյան Միության՝ պատերազմի հարցում դրված դիրքի նկատմամբ։ Լոնդոնը, Հարավ-Աֆրիկական Միությունը՝ Իռլանդիայից հետո, համարում է երկրորդ «անհնազանդ» դոմինիոնը։ Այս դոմինիոնը պատերազմ մտավ Գերմանիայի դեմ, պարլամենտական մեծամասնության միայն մի քանի ձայների շնորհիվ, այն էլ այն բանից հետո, երբ Լոնդոնը մեծագույն ջանքերով կարողացավ նախկին պրեմյեր-մինիստր Հերցոգին հրաժարեցնել իր պոստից։

Այսպիսով, եթե Հարավ-Աֆրիկական Միությանը չհաջողվեց չեզոքություն պահպանել, ապա Անգլիայի համար նա քիչ դժվարություններ չի ներկայացնում, պատերազմի մեջ նրան օգտագործելու խնդրում։

Դոմինիոնի ներքին քաղաքական դրությունը կայուն չէ և այսօրվա վարչապետ գեներալ Սմետսի կողմնակիցների մեծամասնությունը կարող է հեշտությամբ վաղը փոքրամասնության վերածվել։

Հարավ-Աֆրիկական Միության 9,8 միլիոն ազգաբնակչությունից միայն 2.043 հազարն են եվրոպացիներ, մնացած 6,7 միլիոնը



կազմում են նեգրական զանազան ցեղեր, հնդիկների մի փոքր քանակություն և ուրիշներ։ Բնորոշ է, որ չնայած Անգլիայի բազմաթիվ փորձերին՝ նեգր ազգաբնակչությանը ներգրավել ռազմական ուսուցման մեջ, այնուամենայնիվ նա հանդիպում է Հարավ-Աֆրիկական Միության ղեկավար պարտիաների կողմից ուժեղ դիմադրության, որոնք վախենում են նեգրերին զինել։ Եվ այդ զարմանալի չէ, քանի որ նեգր աշխատավորության դրությունը բացառիկ ծանր է և դժգոհությունները նրանց մեջ չափազանց շատ են։

Հարավ-Աֆրիկական Միության արդյունաբերության լեռնային և այլ ճյուղերում աշխատող նեգրերը գտնվում են բացառիկ ծանր դրության մեջ. նրանց աշխատավարձը մի քանի անգամ ցածր է սպիտակամորթ բանվորների աշխատավարձից։ Ռեֆորմիստական առաջնորդների կողմից կազմակերպված պրոֆմիություններում նեգրերին չեն ընդունում։ Նեգրերի համար գոյություն ունի հատուկ օրենսդրություն, այսպես կոչված՝ «գունավոր արգելագիծ» այսինքն՝ մի օրենք, որը սահմանափակում է նեգրերի քաղաքական և քաղաքացիական իրավունքները։

Աշխատավորների դրությունը գյուղում ա-



digitised by A.R.A.R.@

վելի վատթար է։ Գյուղատնտեսական թանվորները գտնվում են ստրկական դրության մեջ։

***

Սկսած 1940 թ. հունիսից, Իտալիայի պատերազմի մեջ մտնելուց հետո, Միջերկրական ծովի վրա և Արևելյան Աֆրիկայում ռազմական գործողություններ ծավալվեցին Անգլիայի և Իտալիայի միջև։

Իտալական զորքերը հարձակումն սկսեցին Անգլո-Եգիպտական Սուդանի և Կենիայի սահմանագլխից։

Կասսալայի և Խարթումից (Սուդանի մայրաքաղաքը) 270 կիլոմետր հարավ գտնվող Հալաբատի իտալացիների կողմից գրավելուց հետո ընդհատվեց Կասսալայի վրայով՝ Կարմիր ծովի վրա գտնվող Սուդան նավահանգիստը տանող՝ երկաթուղային հաղորդակցությունը։

Կենիայում իտալացիներին հաջողվեց առաջ ընթանալ դեպի խորքը և մի շարք կարևոր կետեր գրավել։ Սակայն, ռազմական գործողություններն այստեղ դժվարանում են ոչ միայն բնական վատ պայմանների հետևանքով (ջրի բացակայություն և այլն), քանի դեռ Սուեզի ջրանցքը գտնվում է Անգլիայի ձեռքում, Անգլիան՝ Արևելյան Աֆրիկայում ռազմական գործողությունների համար



սահմանափակ հնարավորություններ ունի։

Օգոստոսի սկզբներին անգլո-իտալական կռիվները ծավալվեցին Բրիտանական Սոմալու շուրջը։ Գործողությունները հեշտանում էին նրանով, որ Բրիտանական Սոմալին շրջապատված էր իտալական տիրապետություններով, իսկ նրա սահմանափակ տարածությունը հնարավորություն չէր տալիս անգլիացիներին երկրի խորքը նահանջել։ Շնորհիվ ռազմական գործողությունների հանկարծակիության և ուժերի ճնշող գերակշռության, իտալացիներին հաջողվեց կարճ ժամկետում գրավել Բրիտանական Սոմալին։

Բրիտանական Սոմալու գրավումն իտալացիների կողմից քիչ է փոխում Արևելյան Աֆրիկայի ստրատեգիական պայմանները։ Ներկայումս, իտալացիք Կարմիր ծովում իրենց տրամադրության տակ չունեն այնքան ծովային ուժեր, որոնք հնարավորություն տային նրանց՝ կտրել հաղորդակցությունը Հնդկական օվկիանոսի և Միջերկրական ծովի միջև։

Ահա թե ինչո՞ւ սոմալական գործողություններից հետո, իտալական հրամանատարությունն սկսեց հարձակումը ծավալել Լիբիայի կողմից, ձգտելով Եգիպտոսի անգլիական ուժերի պարտությանը և Սուեզի



digitised by A.R.A.R.@

ջրանցքի գրավմանը։ Սակայն, իտալական զորքերի գործողությունները Եգիպտոսում կապված են մեծ դժվարությունների հետ, որովհետև նրանք տեղի են ունենում անապատում։ Անհրաժեշտ է նույնպես հաշվի առնել, որ Հունաստանի պատերազմի մեջ մտնելը Միջերկրական ծովում և Աֆրիկայում տարվող անգլո-իտալական պայքարում նոր փոփոխություններ մտցրեց։

***

Լորդ Կերզոնը, 1914—18 թ. թ. կռիվների մասին ունեցած իր հիշողություններում գրում է, որ՝ «Դաշնակիցները նավթի ալիքների վրայով դեպի հաղթանակ լողացին»։

Սակայն, Անգլիայի նավթի սեփական ռեսուրսները, չնայած ուժեղ հետազոտական աշխատանքների, չնչին են, իսկ սինթետիկ հեղուկ-վառելիքի արտադրությունը, մյուս կապիտալիստական երկրների համեմատությամբ, շատ հետ է մնում։

Մինչդեռ ժամանակակից էկոնոմիկայում նավթի դերն օրեց-օր աճում է, իսկ պատերազմ մղելու գործում նավթի նշանակությունն ավելի ու ավելի վճռական է դառնում։ Նավթն անհրաժեշտ է ոչ միայն ավտոմոբիլների, տանկերի, ավիացիայի և նավատորմի համար։ Քիմիական արդյունաբերության զարգացման հետևանքով, նավթը



լայն կերպով օգտագործվում է պայթուցիկ նյութեր, ներկեր և այլն պատրաստելու գործում։

Մերձավոր Արևելքում, նավթի հարուստ հանքատեղեր կան Իրաքում (տերիտորիան՝ 300.000 ք. կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 3,5 միլիոն մարդուց ավելի)։ Իրաքը տարեկան տալիս է 4 միլիոն տոննից ավելի նավթ։

Մի շարք տարիների ընթացքում (մինչև 1930 թ.) Իրաքը հանդիսանում էր Անգլիայի ենթամանդատային տերիտորիան։ Այնուհետև, անգլիացիք նրան ընձեռնեցին, այսպես կոչված, «անկախություն»՝ ապահովելով, սակայն, իրենց հսկողությունը նրա բոլոր բնական հարստությունների վրա, մասնավորապես՝ Մոսուլի նավթի վրա։ Անգլիան Իրաքի տերիտորիան ծածկել է իր օդային բազաների ցանցով, որոնք ոչ միայն «անկախ» Իրաքին հնազանդության մեջ են պահում, այլև ապահովում են օդային գիծը դեպի Հնդկաստան։ Որպես Հնդկաստանը տանող կարևորագույն մուտքերից մեկը Անգլիայի համար՝ Իրաքը մեծ ստրատեգիական նշանակություն ունի։

Անգլիական օդային բազաների և անգլիական զորամասերի ներկայությունն Իրաքում



digitised by A.R.A.R.@

ապահովում է նաև Բաղդադի և Բասրայի վրայով Հնդկաստան տանող ցամաքային ճանապարհը։ Անգլիայի՝ Իրաքի հետ կնքած «բարեկամության» պայմանագիրը թույլատրում է նրան Իրաքում զորք պահել և հսկել նրա արտաքին քաղաքականության վրա։

Պաղեստինը (տերիտորիան՝ 26 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 1,3 միլիոն) և Անդրհորդանանը (տերիտորիան՝ 90.000 ք. կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 300.000) հանդիսանում են Անգլիայի ենթամանդատային տերիտորիաները։ Պաղեստինը երկրագործական-անասնապահական երկիր է։ Նա ստրատեգիական հատուկ նշանակություն ունի, որովհետև գտնվում է Սուեզի ջրանցքից 180—200 կիլոմետր հեռավորության վրա և վերջինիս պաշտպանության գործում հսկայական դեր է խաղում։

Պաղեստինի կարևորագույն, ծովեզերյա քաղաք՝ Հայֆան առաջնակարգ նավահանգիստ է և հանդիսանում է Անգլիայի՝ Միջերկրական ծովի նավատորմիղը նավթով մատակարարող՝ Իրաքի նավթատար խողովակի վերջավորությունը։

Գերմանական «Վեստդեյչեր Բեոբախտեր» թերթը «Հայֆան որպես Անգլիայի դարպասը



Մերձավոր Արևելքում» վերնագրով հոդվածում ընդգծում է՝ նավթի համար մղվող պայքարի նշանակությունը։ Թերթը գրում է.

«Անգլիացիք իրագործեցին՝ Մոսուլը Միջերկրական ծովին միացնող ուղղահաղորդ նավթատար խողովակի կառուցման համարձակ նախագիծը։ Այդպիսի նավթատար խողովակի կառուցումն ուներ հսկայական տնտեսական և ստրատեգիական նշանակություն։ Հայֆայում նավթը լցնում էին պողպատե հսկայական բակերի մեջ։ Այնտեղ կար նաև նավթաթորման գործարան։ Սակայն այդ գործարանը իտալական վերջին ռմբակոծությունների հետևանքով շարքից դուրս է եկել։ Նավթատար խողովակի շինարարությանը զուգահեռ, Անգլիան կատարում էր Հայֆա նավահանգստի շինարարության աշխատանքները։ Վերջին տարիներս Անգլիան այդ նավահանգստի շուրջն ստեղծել է պաշտպանողական կառուցումներ, որոնք պետք է ապահովեն նավթատար խողովակի պաշտպանությունը»։

Վերջում թերթը նշում է, որ իտալական ինքնաթիռների ռմբակոծությունները ինչպես նավթի բակերին, նույնպես և Հայֆայի



digitised by A.R.A.R.@

պաշտպանական կառուցումներին մեծ վնասներ են հասցրել։

## ԱՆԳԼԻԱՅԻ ԽԱՂԱՂ ՕՎԿԻԱՆՈՍՅԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Անգլիայի խաղաղ օվկիանոսյան տիրապետությունները 36 անգամ գերակշռում են բուն Անգլիայի տերիտորիան, իսկ նրանց ազգաբնակչությունը կազմում է Բրիտանական կղզիների ազգաբնակչության երրորդից ավելին։ Այդ տիրապետություններն տնտեսական և ստրատեգիական բացառիկ կարևոր նշանակություն ունեն Անգլիայի համար։ Նրանք հարուստ են կաուչուկով, նավթով, քարածուխով, անագով, ոսկով, վոլֆրամով, երկաթով և այլն։ Ծխախոտի, շաքարի, թեյի, սուրճի, խինինի, բրնձի պլանտացիաները հարուստ բերք են տալիս։

**Բրիտանական Մալայան** գտնվում է Մալակկա թերակղզու և նրա մոտերքը գտնվող մանր կղզիների վրա (տերիտորիան՝ 136 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 5,138 հազար մարդ)։ Նա հանդիսանում է կաուչուկի և անագի արդյունահանման համաշխարհային կենտրոնը։ Անգլիական կապիտալիստները հանդիսանալով Մալայայի կաուչուկի պլանտացիաների տերըն ու տիրականը (բռնագրավելով նաև Հո-



լանդական Հնդկաստանի կաուչուկի արդյունահանումը) հանդիսանում են նաև այդ տեսակ ստրատեգիական հումքի մենաշնորհ առևտուր անողները։ Նույնը վերաբերում է նաև անագին։ Մալայան՝ անագի հանքերի հարստությամբ Հնդկաստանից և Մանջուրիայից հետո, Ասիայում գրավում է երրորդ տեղը։ Անգլիական կապիտալ ներդրումների ընդհանուր գումարը Մալայայում կազմում է մոտ 400 միլիոն ամերիկական դոլլար։

**Բրիտանական Բորնեո**.— գտնվում է Բորնեո կղզու հյուսիսային ափին (տերիտորիան՝ 191 հազար ք. կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 935 հազար). Նա հայտնի է նավթի իր նշանավոր պաշարներով։ Նավթի տարեկան արդյունահանումը Բրիտանական Բորնեոի շախտերում համարյա երեք անգամ ավելի է, քան Յապոնիայում։

**Հոնկոնգը** (տերիտորիան՝ 1013 ք. կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 1,8 միլիոն)— բաղկացած է կղզուց և հարավ-չինական ափի որոշ մասից։ Հանդիսանում է հեռավոր Արևելքում կատարվող անգլիական առևտրի կարևոր կենտրոնը։ Հոնկոնգն աշխարհի խոշորագույն նավահանգստներից մեկն է։ Նրանով են անցնում Եվրոպայից՝ Չինաստան



digitised by A.R.A.R.@

և Ճապոնիա, Ավստրալիայից՝ ԱՄՆ և այլն երկրներ տանող նավային ուղիները։ Հոն-կոնգը հանդիսանում է Հարավային Չինաստանի դարպասը և կարևորագույն տրանզիտային կետը, որի վրայով կատարվում է կապիտալիստական երկրների առևտուրը Չինաստանի հետ։ Անգլիական կապիտալ ներդրումները Հոնկոնգում կազմում են 175 միլիոն ամերիկական դոլլար։

Հոնկոնգը ոչ միայն խոշորագույն առևտրական նավահանգիստ է, այլև հանդիսանում է անգլիական ռազմա-ծովային կարևորագույն բազա։ Սովորաբար Հոնկոնգում գտնվում է անգլիական Հեռավոր-Արևելյան նավատորմիղը։ Սակայն այն բանից հետո, երբ յապոնացիք գրավեցին Կանտոնը և Հոնկոնգի մոտ գտնվող Հայնան կղզին, Հոնկոնգը նշանակալից չափով կորցրեց իր նախկին նշանակությունն Անգլիայի համար։ Անգլիան, այժմ, Խաղաղ օվկիանոսում կատարվող ռազմական գործողություններին նախապատրաստված ռազմա-ծովային ուժերը Սինգապուր է կենտրոնացնում (նույնպես և Ավստրալիայի նավահանգիստներում)։

Ավստրալիան հանդիսանում է Խաղաղ օվկիանոսում գտնվող բրիտանական ամենախոշոր տիրապետությունը (տերիտորիան՝



7.704 ք. կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 6.867 հազար մարդ)։ Գերակշռող ազգաբնակչությունը կազմում են Անգլիայից ներգաղթածները։ Բնիկ ավստրալիացիներից մնացել են մոտ 60.000 մարդ։ Ավստրալիական Միությունը, որպես Բրիտանական կայսրության դոմինիոն, կազմակերպված է 1901 թվին՝ 6 նախկին գաղութներից՝ Նոր-Հարավային Ուելսից, Վիկտորիայից, Կվինսլենդից, Արևմտյան և Հարավային Ավստրալիայից և Տասմանիա կղզուց։ Ազգերի Լիգայի մանդատով Ավստրալիան կառավարման համար ստացավ նախկին գերմանական գաղութ՝ Նոր-Գվինեան, 670.000 ազգաբնակչությամբ։

Ավստրալիան ագրարային-արդյունաբերական երկիր է։ Անգլիական իմպորտում Ավստրալիան զբաղեցնում է երրորդ տեղը, իսկ էքսպորտում՝ երկրորդ տեղը։

Անգլիական կապիտալ ներդրումների ընդհանուր գումարն Ավստրալիայում կազմում է երեք միլիարդ ամերիկական դոլլարից ավելի։

Բրդի արտահանման տեսակետից Ավստրալիան գրավում է առաջին տեղն աշխարհում։ Ավստրալիական էքսպորտը (բրդե գործվածքներ, միս, յուղ, հաց) այժմ գլխավորապես գնում է Մերձավոր Արևելքում



digitised by A.R.A.R.@

գտնվող անգլիական բանակի կարիքների բավարարման համար։ Անգլիան պատերազմ մտնելուց հետո Ավստրալիայի նշանակությունը, որպես Բրիտանական կայսրության հումքի և պարենի բազա, հատկապես աճեց։ Անգլիական կառավարությունը Ավստրալիայի հետ պայմանագիր է կնքել՝ ստանալու բրդի ողջ ավելցուկները (նույնպես և Նոր Զելանդիայի հետ), որոնք պետք է ստացվեն ոչխարներից ամբողջ պատերազմի ընթացքում և անգամ՝ պատերազմից հետո, առաջին խուզումից։

Շուտով, Եվրոպայում պատերազմ սկսվելուց հետո, Ավստրալիան նույնպես պատերազմ հայտարարեց Գերմանիային։ Ավստրալիական զորքերը գտնվում են Եգիպտոսում, գեներալ Ուեյվելլի բանակի կազմում։

Ստեղծված են բրիտանական բանակի համար օդաչուական կազմ պատրաստող տասնյակ դպրոցներ։ Քանի գնում, ուժեղանում է ռազմական նյութերի մատակարարումն Անգլիային։ Այս նպատակի համար ընդարձակվում է ռազմական արդյունաբերությունը։

Նոր Զելանդիա (տերիտորիան՝ 268 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 1.602 հազար մարդ)։ Այս դոմինիոնը հանդիսանում է Անգլիայի, գլխավորապես գյու-



ղատնտեսական կցորդը։ Նա Անգլիային մատակարարում է գլխավորապես անասնապահության և հողագործության մթերքներ՝ յուղ, պանիր, միս, բուրդ, մորթի, կաշի և այլն։

Վերջին տարիներս, Անգլիան Խաղաղ օվկիանոսի վրա, մեկը մյուսի հետևից կորցնում է իր դիրքերը։ Նա կորցրել է Չինաստանի էկոնոմիայում գրավող իր նախկին տիրապետող դրությունը։ Անգլիական կապիտալիստներն այժմ արտաքսված են յապոնացիների կողմից ո՛չ միայն Չինաստանի առևտրի ասպարեզում, այլև նավագնացության, արդյունաբերության և ֆինանսների։ Անգլիան յապոնացիների պահանջով հետ է կանչել իր զորքերը Հյուսիսային Չինաստանից և Շանհայից, որտեղ նա խոշորագույն կապիտալ ներդրումներ ունի։

Յապոնական զորքերի ներխուժումը Ֆրանսիական Հնդկաչինը, անգլիական դիրքերը վտանգի տակ է դնում Խաղաղ օվկիանոսի նաև հարավ-արևմտյան մասում։ Հնդկաչինից յապոնացիք կարող են վտանգ սպառնալ նավթով հարուստ անգլիական գաղութ Բիրմային և կարող են այնտեղից դուրս գալ Հնդկական օվկիանոս, որտեղ գտնվում է Բրիտանական կայսրության ադամանդը — Հնդկաստանը։



digitised by A.R.A.R.@

Խաղաղ և Հնդկական օվկիանոսներում գտնվող բրիտանական գաղութային տիրապետությունների ողջ պաշտպանության կենտրոնը հանդիսանում է Սինգապուրի ռազմա-ծովային բազան։

Սինգապուրը— գտնվում է այնտեղ, ուր Խաղաղ և Հնդկական օվկիանոսներն իրար են միանում, Բիրմայի և Սարավակայի նավթով հարուստ հանքերի մոտ, Մալակկյան նեղուցում, Մալայայի՝ անգլիական գաղութային տիրապետությունների տերիտորիայի վրա։

Սինգապուրի հսկայական ծովային և ավիացիոն բազան կարող է իր մեջ տեղավորել ողջ բրիտանական խաղաղ-օվկիանոսյան նավատորմիղը։

Սինգապուրի նշանակությունը հսկայական է։ Նա տիրապետում է Հեռավոր Արևելքի և Հնդկական օվկիանոսի միջև ընկած ուղղաձիգ ճանապարհին։ Սինգապուրի բազայի կառուցման վրա Անգլիան ծախսել է մոտ 20 միլիոն ֆունտ ստերլինգ։ Անգլիացիք Սինգապուրն անվանում են «Արևելքի Ջիբրալթար»։ Սինգապուրի դոկերը կարող են իրենց մեջ տեղավորել ամենախոշոր նավերը, ներառյալ գծանավերը։

Ցապոնիայի կողմից Սինգապուրին ըստեղծված վտանգը մեծ անհանգստություն է



առաջացրել անգլիական իմպերիալիստների մեջ։ Իզուր չէ, որ արտասահմանյան մամուլը հաղորդում է, որ իբր թե Սինգապուրի պաշտպանման և այն, Յապոնիայի հետ կռիվ առաջանալու դեպքում, ԱՄՆ-ի խաղաղ-օվկիանոսյան նավատորմիղի տրամադրությանը հանձնելու՝ անգլո-ամերիկական համաձայնություն է կընքված։

## ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԳԱՆՁԱՐԱՆԸ

Բրիտանական կայսրության կարևորագույն գաղութը հանդիսանում է Հնդկաստանը։ Նրա տերիտորիան հավասար է 4.079 հազար քառակուսի կիլոմետրի, իսկ ազգաբնակչությունը՝ (Բիրմայի հետ մեկտեղ) 375 միլիոն մարդու, որը 8 անգամ ավելի է, քան բուն Անգլիայինը։ Ազգաբնակչության մեծագույն մասն ապրում է Բրիտանական Հնդկաստանում, որը կառավարվում է անգլիական փոխարքայի կողմից։ Իսկ մնացած մասն ապրում է այսպես կոչված՝ «անկախ իշխանություններ»-ում, որոնց թիվը հասնում է մինչև 600-ի։ Դրանք կառավարվում են տեղական իշխանների կողմից (ռաջա), որոնք փաստորեն ենթարկվում են անգլիական իշխանությանը։

Հնդկաստանը Բրիտանական կայսրության գանձարանն է։ «Մենք գրավեցինք Հնդկաս-



digitised by A.R.A.R.@

տանը։ Մենք գրավեցինք նրան ոչ թե հնդիկների օգտի համար։ Ես գիտեմ, որ միսիոներական ժողովներում ասում են, թե մենք Հնդկաստանը գրավել ենք նրա համար, որպեսզի բարձրացնենք հնդիկների կենսական մակարդակը։ Դա դատարկաբանություն է։ Մենք գրավեցինք Հնդկաստանը, որպես անգլիական ապրանքների վաճառման շուկա։ Մենք հնազանդեցրինք Հնդկաստանին սրով, և սրով էլ պետք է պահենք այն։ Ես այնքան երկերեսանի չեմ, որպեսզի ասեմ, թե Հընդկաստանը մենք պահում ենք հնդիկների համար»։ Սա՝ ներքին գործերի նախկին մինիստրը՝ սեր Ջոնսոն Հիքսի խոստովանությունն է, արված 1925 թվին, որը կարող է ծառայել որպես պերճախոս վկայություն գաղութային երկրներում վարած բրիտանական քաղաքականությանը։

Հնդկաստանի աշխատավորության շահագործումը կրում է գազանային բնույթ։ Բանվորների աշխատավարձն այնքան է ցածր, որ նրանց կեսը սովի են դատապարտված։ Սիստեմատիկ սովածությունները սովորական երևույթ են Հնդկաստանում։ Միայն 1918 թ. սովից և հիվանդություններից Հնդկաստանում մահացել են 13 միլիոն մարդ։ Հնդիկի կյանքի միջին տևողությունը 1881 թվին հավասար էր 30 տարվա, իսկ այժմ՝ 23։



Բանվորական օրը Հնդկաստանում տևում է 12-ից մինչև 16 ժամ և ավելի։ Հնդկական մանածագործն ստանում է աշխատավարձ 7 անգամ քիչ, քան ամերիկականը և 4 անգամ քիչ, քան անգլիականը։ Հնդկաստանում կան մինչև 40 միլիոն անգործներ։

Ամերիկական «Էշիա» ժուրնալը գրում է. «Հնդկական ժողովուրդը սովում է և այդ սովի չափերը չեն կարող Արեվմուտքի երկրները իրենց պատկերացնել։ Լայն մասսաներն ապրում են բնակարանային վատթարագույն պայմաններում, հագած են ցնցոտիներ, որոնք հազիվ թե կարող են հագուստ կոչվել... Եթե աշխատող բանվորները մեծ մասամբ սովում են, ապա ի՞նչ կարելի է ասել նրանց մասին, ովքեր աշխատանք չունեն»։

Երեխաները բարբարոսական շահագործման են ենթարկվում։ «Խինդու» թերթը գրում է Մադրասի ծխախոտային արհեստանոցների աշխատանքի մասին. «Ծխախոտային արհեստանոցները ներկայացնում են իրենցից առանց պատուհանների խեղդող արկղիկներ, որտեղ երեխաները նստած են հատակին այնպիսի խտությամբ, որ նրանց միջից անցնելն անհնարին է։ Որքան փոքր է երեխան, այնքան նրա մատները ծխախոտ ոլորելու համար ճկուն են, այնքան նա ավելի է հարմարեցված աշխատանքին. այդ պատ-



digitised by A.R.A.R.@

ճառով արհեստանոցներում երեխաներն աշխատում են սկսած 5 տարեկանից»։ Մադրասի ծխախոտային արհեստանոցներում աշխատում են մոտ 30.000 երեխաներ։

Բրիտանական իմպերիալիզմի ջատագովները պնդում են, թե Հնդկաստանում գերությունը վերացված է դեռ 1835 թ.։ Սակայն, գերությունը դեռ մինչև այժմ էլ գոյություն ունի։ Ներկայումս Հնդկաստանում հաշվվում են 6 միլիոնից ավելի այսպես կոչված՝ «պարտապանց» գերիներ։ Պահպանվել են գերիների տասնյակ զանազան տեսակներ՝ ժառանգապարտքային գերություն, ցմահ գերություն և այլն։

Բրիտանական կապիտալ ներդրումները Հնդկաստանում կազմում են մոտ 1 միլիարդ ֆունտ ստերլինգ։ Հնդկաստանը տալիս է Բրիտանական կայսրության ողջ եկամուտների մոտ 5-րդ մասը։ Անգլիայի արտահանման 38 տոկոսը Հնդկաստան է գնում, իսկ նրա ներմուծման 32 տոկոսը ընկնում է Հնդկաստանի հաշվին։

Հնդկաստանի ռեսուրսները չափազանց մեծ են։ Հնդկաստանը տալիս է Անգլիային հումք և պարեն՝ բուրդ, յուղատու բույսեր, կաուչուկ, ջուտ, բրինձ, թեյ և այլն։ Հնդկաստանից անգլիացիք ստանում են՝ մարգանեց, երկաթ, պողպատ և այլն։



Դեռ 1914—18 թ. թ. առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ Անգլիան դուրս կորզեց Հնդկաստանից պատերազմ վարելու համար հսկայական գումարներ։ Միայն որպես «նվեր» Հնդկաստանը տվեց Անգլիային 150 միլիոն ֆունտ ստերլինգ, այսինքն՝ այն ժամանակվա ֆունտ ստերլինգի կուրսով, մոտ 1,5 միլիարդ ռուբլի ոսկով։ Անգլիական իմպերիալիստները արտահանեցին Հնդկաստանից 3,5 միլիոն տոննա պարեն և զանազան ռազմական հանդերձանք։ Հնդկաստանը տվեց մոտ 1,5 միլիոն զինվոր (ավելի, քան Կանադան, Հարավային Աֆրիկան և Նոր-Զելանդիան միասին վերցրած), մի քանի հարյուր միլիոն հրացանի փամփուշտներ, մեծ քանակությամբ թնդանոթներ և այլ ռազմական պարագաներ։

Եվ ներկա, երկրորդ իմպերիալիստական պատերազմում նո՛ւյնպես անգլիական իմպերիալիստները Բրիտանական կայսրության պաշտպանման համար օգտվում են հնդկական զինվորներով։ Կարմիր ծովի, Սուեզի ջրանցքի ափերին և Եգիպտոսում գտնվում են հնդկական զորքեր, որոնց մի մասն արդեն մասնակցում են կռիվներին։

Հնդկական երկաթագործական և պողպատի արդյունաբերությունն լայնացրել է իր արտադրությունը։ Զուգոնի ձուլումը 1938



digitised by A.R.A.R.@

թ. կազմում էր 1,6 միլիոն տոննից ավելի։ Անգլիական թերթերի հաղորդագրություններով, սեպտեմբեր ամսին Հնդկաստանի կողմից Անգլիային լրացուցիչ կերպով չուգուն և երկաթ մատակարարելու պայմանագրեր են կնքվել։

Անգլիական բուրժուազիան ձգտում է պատերազմը վարելու համար մաքսիմալ կերպով օգտագործել Հնդկաստանի հարուստ ռեսուրսները։ Սակայն նա հնդկական ժողովրդի կողմից համառ դիմադրության է հանդիպում։ Այդ դիմադրությունն ավելի մեծ է, քան առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ։

Անգլիան առանց հարցնելու հնդկական ժողովրդի կարծիքը, հայտարարեց, որ Հնդկաստանը գտնվում է պատերազմական դրության մեջ։ Ի պատասխան դրան, Հնդկաստանում մեծ շարժում բարձրացավ պատերազմի դեմ։ Երկրում հսկայական ազդեցություն ունեցող քաղաքական կազմակերպությունը—Հնդկական Ազգային կոնգրեսը՝ հակապատերազմական դիրք է գրավում։ Հնդկական Ազգային կոնգրեսը համախմբում է ավելի քան 5 միլիոն անդամ։ Հնդկական Ազգային կոնգրեսի ձախ թևը պայքարում է Հնդկաստանի լիակատար անկախության համար։ Համաձայնողական տարրերը՝ Գանդիի



գլխավորությամբ, պատրաստ էին Բրիտանական կայսրության հետ կոմպրոմիսների գալ, սակայն մասսաների ճնշման տակ և, վախենալով կորցնել իրենց աստիճանաբար թուլացող ազդեցությունը, ստիպված եղան թազցնելու իրենց իսկական մտադրությունները։

Օգոստոսի սկզբներին անգլիական պարլամենտում ելույթ ունեցավ Հնդկաստանի և Բիրմայի գործերի մինիստր Էմերին, որը հայտարարեց, թե՝ Անգլիայի կառավարությունը մտադիր է հետագայում Հնդկաստանին նոր կոնստիտուցիա և դոմինիոնի իրավունքներ ընձեռնել, սակայն նա այդ հարցով կզբաղվի միայն պատերազմը վերջանալուց հետո։ Ազգային կոնգրեսն Էմերիի այդ առաջարկությունը չընդունեց։

Անգլիան միաժամանակ ուժեղացրել է Հնդկաստանում ռեպրեսիաները։ Ազգային կոնգրեսի անդամների, բանվորների, գյուղացիների բազմաթիվ ձերբակալություններ են կատարվում։ Միայն Պենջաբ նահանգում պատերազմի երկու առաջին ամիսներում ձերբակալվել են 22150 մարդ, ժողովներում հակապատերազմական ելույթներ ունենալու համար։

Անգլիական ցենզուրան բաց չի թողնում և ոչ մի տեղեկություն փաստերի հակա-



digitised by A.R.A.R.@

պատերազմական շարժման մասին։ Սակայն, ոստիկանությունը չկարողացավ թաքցնել հակաբրիտանական հուզմունքների հսկայական ալիքները, որոնք անցյալ աշնանը ծայր առան Հնդկաստանում և շուտով՝ պատերազմին սկսվելուց հետո, անցան Արևմտյան Եվրոպան։

Բոմբեի քաղաքական գործադուլին, որը տեղի ունեցավ 1939 թ. հոկտեմբերին, մասնակցեցին 90.000-ից ավելի բանվորներ։ Տների պատերը ծածկվում էին հակապատերազմական լոզունգներով։ Ուշ երեկոյան, գործադուլը դեռ չսկսած, բանվորական թաղամասերում ջահերով երթ տեղի ունեցավ։ Առավոտյան Բոմբեի բանվորներն աշխատանքի դուրս չեկան։ Կանգնել էին գործարանները, ֆաբրիկաները, դադարեցված էր աշխատանքը նավահանգստում, փակվել էին բարձրագույն ուսումնական հիմնարկները։

Ոստիկանությունն անզոր էր որևէ բան կատարելու։ Համահայն Ազգային Կոնգրեսի որոշման, 1940 թ. հունվարին տեղի ունեցավ այսպես կոչված՝ «անկախության օր»-ը։ Դեմոնստրացիաները կատարվեցին Հնդկաստանի բոլոր գլխավոր քաղաքներում։ Բոմբեում գործադուլ արին 50 ձեռնարկություններ։

1940 թ. գարնանը Բոմբեում երկու ամիս



տևող մի գործադուլ տեղի ունեցավ, որն ընդգրկել էր 150.000 բանվոր։

Հակապատերազմական շարժումը թափանցում է նաև հնդկական գյուղացիության լայն խավերը։ Այսպես օրինակ՝ Մայսոր նահանգում, Միացյալ Գավառներում և Մադրասում տեղի են ունեցել գյուղացիների բավականին խոշոր հակապատերազմական ելույթներ։

Հնդկաչին թերակղզու հյուսիս-արևմտյան մասում, Հարավ-Արևելյան Ասիայում գտնվում է Բիրմա անգլիական գաղութը։ Նա սահմանակից է Չինաստանին, Ֆրանսիական Հնդկաչինին և Սիամին (Տաի)։ Նրա տերիտորիան 597 հազար քառակուսի կիլոմետրից ավելի է։ Ազգաբնակչությունը՝ 14,667 հազար մարդ։ Բիրման արտահանում է բրինձ, նավթ, կապար, անագ, վոլֆրամ։

Բիրմայի վրայով անցնում է Չինաստան տանող ճանապարհը։ Այս ճանապարհով Եվրոպայից և ԱՄՆ-ից ապրանքներ և ռազմական բեռներ են գնում Չինաստան։ Ճապոնիայի ճնշման տակ Անգլիան փակեց այդ ճանապարհը, սակայն Գերմանիայի, Իտալիայի և Ճապոնիայի միջև ռազմական դաշինք կնքվելուց հետո, Անգլիան նորից



digitised by A.R.A.R.@

Բիրմա-Չինաստան ճանապարհը բացեց։

Հնդկաստանի հարավային ծայրամասում գտնվում է Ցեյլոն կղզին (տերիտորիան՝ 66 հազար քառ. կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 5.312 հազար մարդ)։ Անգլիան Ցեյլոնից արտահանում է թեյ։

## ԻՌԼԱՆԴԻԱ

Էյրե (Իռլանդիա)—(տերիտորիան՝ 69 հազար քառ. կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 3 միլիոն մարդ). նա Անգլիայի տիրապետություններից ամենից անհնազանդն է։ Իռլանդական ժողովուրդն արդեն մի քանի դարերի ընթացքում անդուլ պայքար է մղում իր ազգային անկախության համար։ 1916 թվին, առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ, իռլանդացիք մեծ ապստամբություն բարձրացրին, որը դաժանությամբ ճնշվեց անգլիական իմպերիալիստների կողմից։

Էյրեն, որին Անգլիան դեռ համառորեն շարունակում է դոմինիոն անվանել, փաստորեն այդպիսին չի հանդիսանում։ 1937 թ. ընդունված կոնստիտուցիան ձևակերպեց Էյրեի Բրիտանական կայսրությունից դուրս գալը և վերածեց նրան մի պետության, որի գլխին կանգնած է վարչապետը։ Անգլիական թագավորի իշխանությունը վերա-



ցավ. կոնստիտուցիան, ընդհանրապես, ոչինչ չի ասում Էյրեի և Անգլիայի միջև գոյություն ունեցող փոխհարաբերությունների մասին։

Նոր կոնստիտուցիայի համաձայն Էյրեի կազմում մտցված է նաև Օլստերը (Հյուսիսային Իռլանդիայի 6 կոմսությունները), որը խլված էր Իռլանդիայից 1921 թ. պայմանագրի համաձայն, Անգլիայի կողմից։ Սակայն Օլստերը փաստորեն Անգլիայի կազմում մնաց, որն այժմ տիրակալում է այնտեղ այնպես, ինչպես առաջ։ Մեկ երկրի այդպիսի բռնի բաժանումը երկու մասի (արդյունաբերական հյուսիսը՝ Բելֆաստի գլխավորությամբ և գյուղատնտեսական հարավը՝ Էյրեի մայրաքաղաք՝ Դուբլինի գլխավորությամբ) ողջ երկրի տնտեսական և կուլտուրական զարգացման վրա կործանարար ազդեցություն ունեցավ։

Իռլանդիայի այդ արհեստական բաժանման դեմ, (որի վրա մինչև այժմ էլ դեռ պնդում է Անգլիան, հրահրելով ազգային և կրոնական կռիվներ կաթոլիկ հարավի և բողոքական հյուսիսի միջև) իռլանդական ժողովուրդը վճռական պայքար է մղում։

Իռլանդական նացիոնալիստները Իռլանդիայի ներկա վարչապետ դե-Վալերի գլ-



digitised by A.R.A.R.@

խավորությամբ արտահայտելով բուրժուա-կուլակային տարրերի շահերը, ձգտում են Լոնդոնի հետ կոմպրոմիսային համաձայնությունների գալ: Ծայրահեղ նացիոնալիստները, այսպես կոչված՝ «Իռլանդական ռեսպուբլիկական բանակը» արտահայտելով մանր բուրժուազիայի և ֆերմերական չքավոր տարրերի տրամադրությունները, թշնամական դիրք են գրավում: Նրանք պահանջում են Օլստերը անմիջապես միացնել Իռլանդիային:

Էյրեն, չնայած Լոնդոնից գործադրվող ուժեղ ճնշումին, դեռ շարունակում է պահպանել իր չեզոքությունը: Էյրեի այս դիրքը լուրջ կերպով անհանգստացնում է անգլիական իմպերիալիստներին: Եվ զարմանալի չէ: Էյրեն Անգլիայի համար ունի կարևորագույն տնտեսական և ստրատեգիական նշանակություն: Իռլանդական էքսպորտի (անասուններ, յուղ, միս, ձու և այլն) 80-90 տոկոսն Անգլիա է գնում: Իսկ Էյրեի ստրատեգիական նշանակությունը կայանում է, առաջին հերթին, նրա՝ բրիտանական կղզիների աշխարհագրական անմիջական մոտիկության մեջ:



## ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԿԻՍԱԳՆԴՈՒՄ

Արևմտյան կիսագնդում Անգլիան ունի լայնարձակ տիրապետություններ: Բրիտանական կայսրության խոշորագույն դոմինիոնը հանդիսանում է Կանադան: Նա զբաղեցնում է հյուսիս-ամերիկյան կոնտինենտի կեսը և Արկտիկական արշիպելագի կղզիներն ու թերակղզիները:

Կանադայի տերիտորիան հավասար է 9.542 հազար ք. կիլոմետրի, ազգաբնակչությունը՝ 11 միլիոնից ավելի: Կանադան ունի բարձր զարգացած արդյունաբերություն, որը հատկապես զարգացավ առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ: 1937 թ. արդյունաբերության տարեկան արտադրանքը կազմում էր 3 միլիարդ դոլլարից ավելի: Դրա հետ մեկտեղ, Կանադան հանդիսանում է բարձր զարգացած գյուղատնտեսական երկիր: Նա արտահանում է մեծ քանակությամբ ցորեն: Կանադան հարուստ է քարածուխով, անտառներով, պղնձով, ցինկով և արծաթով: Իր ժամանակին Կանադան Ֆրանսիական գաղութ էր, սակայն այսպես կոչված՝ Յոթնամյա պատերազմից հետո, (1756—1763 թ. թ.) Անգլիան կալթեց նրանից:



digitised by A.R.A.R.@

Կանադան բաղկացած է 9 ինքնավար գավառներից:

Չնայած, որ Կանադան ձևականորեն բրիտանական դոմինիոն է հանդիսանում, այնուամենայնիվ, նա տնտեսական մեծ կախում ունի ԱՄՆ-ից: Դեռ առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ժամանակ, ամերիկական կապիտալիստները ստեղծել էին Կանադայում բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ: Այդ ժամանակվանից սկսած ամերիկական կապիտալի ներխուժումը՝ Կանադայի էկոնոմիկան անընդհատ աճեց և հանգեցրեց այն բանին, որ ներկայումս ամերիկական բուրժուազիան Կանադայում ունի ավելի շատ կապիտալ ներդրումներ, քան Անգլիան:

1939 թ. սեպտեմբերին Կանադան պատերազմի մեջ մտավ Գերմանիայի դեմ, Անգլիայի կողմը: Պատերազմը բերում է Կանադայի բուրժուազիային մեծ օգուտներ: Կանադական արդյունաբերությունն արդեն ստացել է 445 միլիոն դոլլարի ռազմական պատվերներ: Ինչպես հաղորդում է ամերիկական մամուլը, ռազմական պատվերները 1941 թվին կկրկնապատկվեն: Կանադայում կազմակերպվում է տանկերի, գնդացիրների, արկերի, փամփուշտների, հրացանների-



րի, դաշտային, հակատանկային, զենիթային թնդանոթների, ինքնաթիռների արտադրություն:

Կանադան յուրաքանչյուր ամիս Անգլիա է ուղարկում մինչև մեկ միլիոն ռումբ և մեծ քանակությամբ թնդանոթներ: «Նյու-Յորք Թայմզ» թերթի հաղորդագրությամբ, ինքնաթիռների ամսեկան արտադրությունը հավասար է 130 հատի: Անգլիան ցանկանում է Կանադան դարձնել իր զինապահեստը: Պատրաստվում է օդաչուական կադր: Ինչպես հաղորդում է ամերիկյան մամուլը, Կանադայի ռազմա-օդային նավատորմի անձնական կազմը 1939 թ. աշնան 4450 մարդուց հասել է ներկայումս 26.000 մարդու:

Կանադական բանակը հաշվվում է 167 հազար մարդ. բանակի մի մասը տեղափոխված է Անգլիա և Իսլանդիա: Կանադայի ռազմա-ծովային նավատորմիղը բաղկացած է 125 միավորից, այդ թվում 13 էսմինեց, մեկ օժանդակ կրեյսեր, մեծ քանակությամբ ականակիրներ և այլն: Նավերի մեծ քանակություն այժմ կառուցվում են կանադական նավաշինարաններում (ուռկանարկուներ, ծովականային կատերներ և այլն):

Ոչ-շատ ժամանակ սրանից առաջ, Կանա-



digitised by A.R.A.R.@

դան և ԱՄՆ-ը՝ պատերազմի դեպքում արևմտյան կիսագունդը միացյալ ուժերով պաշտպանելու պայմանագիր կնքեցին: ԱՄՆ-ը վերցնում է իր վրա Կանադայի պաշտպանությունը: Ամերիկական զորքերը, նավատորմիղը, ավիացիան պիտի պաշտպանեն Կանադան: Այդ համաձայնությունը նախատեսնում է նաև Կանադայի և ԱՄՆ-ի գլխավոր շտաբների միացումը: Ամերիկա-կանադական համաձայնությունը նշանակում է ԱՄՆ-ի՝ Կանադայում ունեցած դիրքերի էլ ավելի ամրապնդումը:

ԱՄՆ-ի և Կանադայի միջև միատեղ պաշտպանության մասին կնքած համաձայնությունը հանդիսանում է առաջին քայլը անգլո-ամերիկական ռազմական դաշնակցության ասպարեզում: Ռազմա-ծովային բազաների համաձայնությունը՝ ամերիկական 50 էսմինեցների փոխարեն զգալի չափով ընդարձակել է այդ դաշնակցությունը: Այդ նոր պայմանագրի համաձայն, ԱՄՆ-ը ստանում է Արևմտյան կիսագնդում անգլիական մի շարք բազաներ:

Նյուֆաունդլենդը սկսած 1933 թվից զրկված է դոմինիոնի իրավունքներից: Նյուֆաունդլենդի տերիտորիան (Լաբրադորի հետ միասին) հավասար է 422 հազար քառակուսի



կիլոմետրի, ազգաբնակչությունը՝ 293 հազար մարդու): Նյուֆաունդլենդի ազգաբնակչությունը զբաղվում է գլխավորապես ձկնորսությամբ: Նյուֆաունդլենդն ունի երկաթահանքի մեծ պաշարներ: Կղզում կան աերոդրոմներ, որտեղից ինքնաթիռներն Ատլանտիկայի հյուսիսային մասի վրայով թռիչքներ են կատարում դեպի Անգլիա: Նյուֆաունդլենդից է կատարվում ռազմական ինքնաթիռների ուղարկումն Անգլիա:

Անգլիական ռազմա-ծովային կայանը և ավիոբազան, որոնք գտնվում են Բերմուդյան կղզիների վրա, հանձնված են ԱՄՆ-ին: Բերմուդան բաղկացած է 360 ոչ-մեծ կղզիներից, որոնցից միայն 20-ն են բնակելի: Այդ կղզիները ԱՄՆ-ի համար կարևոր են նրանով, որ նրանք գտնվում են Ամերիկայից դեպի Եվրոպա տանող օդային ճանապարհի վրա: Կղզիների ընդհանուր տերիտորիան հավասար է 49 քառակուսի կիլոմետրի, ազգաբնակչությունը՝ 30 հազար մարդու:

Անգլիան Արևմտյան Հնդկաստանում (Վեստ-Ինդիա) Բահամյան, Յամայկա, Տրինիդատ, Բարբադոս, Սանտա-Լուչիա և Անտիգուա կղզիների վրա գտնվող իր ծովային և ավիացիոն բազաները հանձնել է ԱՄՆ-ին: Արևմտյան, կիսագըն-



digitised by A.R.A.R.@

դում գտնված այդ անգլիական բազաների ձեռք բերումը, ԱՄՆ-ին հնարավորություն է տալիս զգալիորեն ուժեղացնելու իր ստրատեգիական դիրքերն Ատլանտյան օվկիանոսում։ Այդ բազաները կարող են սպառնալ Հյուսիսային Ամերիկայի արևելյան ափերի մատույցները պաշտպանող հզոր մի միասնական համակարգ և ուժեղացնել Պանամայի ջրանցքի պաշտպանությունը։

**Բահամյան** կամ **Լուկայան կղզիները** գտնվում են Ֆլորիդայի ափերից ոչ-շատ հեռու (ԱՄՆ)։ Կղզիների տերիտորիան հավասար է 14,4 հազար քառակուսի կիլոմետրի։ Այդ կղզիները սակավաբնակ են, ունեն ընդամենը՝ 66,9 հազար մարդ ազգաբնակչություն (գլխավորապես նեգրեր)։

**Բարբադոս կղզին**, որը գտնվում է Ատլանտյան օվկիանոսում, Վենեսուելայից հյուսիս, մտնում է Փոքր-Անտիլյան կղզիների խմբի մեջ։ Մինչև համաձայնությունը ԱՄՆ-ի հետ, Բարբադոսն անգլիական նավատորմիղի բազան էր հանդիսանում։ Կղզու տերիտորիան հավասար է 430 քառակուսի կիլոմետրի, ազգաբնակչությունը՝ 191 հազար մարդ։

**Յամայկա կղզին** մտնում է Մեծ-Անտիլյան կղզիների խմբի մեջ և գտնվում է Կարիբյան ծովում։ Ստրատեգիական տեսակետից կարևորագույն կղզի է, որի վրա գտնվում էր անգլիական ռազմա-ծովային բազան։ Այժմ այդ բազան հանձնված է ԱՄՆ-ին։ ԱՄՆ-ի համար Յամայկան կարևոր է նրանով, որ կղզին գտնվում է Պանամայի ջրանցքի մոտ։ Իր ժամանակին Յամայկան հանդիսանում էր Անգլիայի հենման կետը Կարիբյան ծովում։ Կղզու վրա կան բանանի, շաքարեղեգնի, սուրճի և կակաոյի հարուստ պլանտացիաներ։ Կղզու տերիտորիան հավասար է 11,5 հազար ք. կիլոմետրի, ազգաբնակչությունը՝ 1.162 հազար մարդ։

**Տրինիդադ և Տոբագո կղզիներ.** տերիտորիան՝ 5,1 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 496 հազար մարդ։ Կան շաքարեղեգնի պլանտացիաներ և արդյունահանվում է նավթ։ Նավթի արդյունահանման տեսակետից Անգլիայի գաղութների մեջ Տրինիդադը գրավում է առաջին տեղերից մեկը։

**Հողմաբեր և Հողմահար կղզիները** (Փոքր-Անտիլյան կղզիների խումբը). **Անտիգուա, Բարբուդա, Ռեդոնդա, Սան-Կիտս, Նևիս, Անգիլյա, Դոմինիկա, Մոնսերրա և Վիրգինյան կղզիները**՝ գրավում են 1,8 հազար քառակուսի կիլոմետր տարածություն։ Ազգա-





digitised by A.R.A.R.@

բնակչությունը հավասար է 138 հազար մարդու։

Վինդվարդյան կղզիները — Գրենադան, Սան-Վինսենտը, Սանտա-Լուչիան և ուրիշները՝ գրավում են 1,3 հազար քառակուսի կիլոմետր տարածություն, 213 հազար մարդ ազգաբնակչությամբ։ Ստրատեգիական տեսակետից բոլոր այս կղզիները կարևոր են նրանով, որ նրանք փակում են արևելքից Կարայիբյան ծովի մուտքը։ Այդ կղզիները հանդիսանում էին Անգլիայի գլխավոր հենման կետերն Ամերիկայի կենտրոնական մասում, անմիջականորեն Պանամայի ջրանցքի մոտ (որը հանդիսանում է Ատլանտյան և Խաղաղ օվկիանոսները միացնող ամենակարճ ծովային ճանապարհը)։

Կենտրոնական Ամերիկայում Անգլիայի հենման կետ է հանդիսանում նաև Բրիտանական Գոնդուրասը (տերիտորիան՝ 22 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 56 հազար մարդ)։

Հարավային Ամերիկայում Անգլիան տիրապետում է Բրիտանական Գվիանային (տերիտորիան՝ 232 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 340 հազար մարդ)։ Գվիանայում գտնվող անգլիական



բազաները հանձնված են ԱՄՆ-ին։ Բնակիչների գլխավոր զբաղմունքը երկրագործությունն է։ Գվիանան հարուստ է ոսկով։

Անգլիային են պատկանում նաև Ամերիկյան մայր ցամաքի հարավային մասում գտնվող Ֆալկլենդյան կղզիները (տերիտորիան՝ 12,5 հազար քառակուսի կիլոմետր, ազգաբնակչությունը՝ 3000 մարդ)։

Հարավային Շետլանդյան և Հարավային Օրկնեյան կղզիները նույնպես ունեն մեծ ստրատեգիական նշանակություն. այնտեղ կան անգլիական ռազմա-ծովային բազաներ։

Անտարկտիկական արշիպելագում Անգլիան տիրում է Գրեյխեմի Երկրին: Մինչդեռ Արևմտյան կիսագնդի իր դիրքերն Անգլիան մեկը մյուսի հետևից կորցնում է, նրանց գրավում է ԱՄՆ-ը։ ԱՄՆ-ի և Անգլիայի դաշնակցությունը ոչ մի չափով չի վերացնում անգլո-ամերիկյան հակասությունների հարցը։



digitised by A.R.A.R.@

***

Այժմ Բրիտանական կայսրությունը չի ներկայացնում ամուր միասնություն։ Դա հատկապես վառ կերպով նկատելի է դոմինիոնների դիրքից։ Կանադան ավելի ու ավելի ձգտում է ԱՄՆ-ին։ Ամերիկական բուրժուազիան արդեն բացահայտորեն ասում է, որ Կանադան պետք է մտնի ԱՄՆ-ի տիրապետությունների սֆերան։ Պրեզիդենտ Ռուզվելտը ոչ-երկիմաստաբար հայտարարեց, որ Մոնրոէի դոկտրինան պետք է տարածվի նաև Կանադայի վրա։ Մոնրոէի այդ դոկտրինան— «Ամերիկան ամերիկացիների համար»— ԱՄՆ-ի բուրժուազիան այժմ շատ ընդարձակորեն է մեկնաբանում։

Անգլիական իմպերիալիզմն իրականում արդեն կորցրել է իր նախկին ազդեցությունն Արևմտյան կիսագնդում։ ԱՄՆ-ը նրան արտաքսել է Լատինական Ամերիկայի շուկաներից և զրկել է Ամերիկայի ափերում գտնվող ռազմական բազաներից ու հենման կետերից։

Անգլիական իմպերիալիզմն իր դիրքերը մեկը մյուսի հետևից կորցնում է նաև Հեռավոր Արևելքում։

Անգլիան զգալիորեն արդեն զրկվել է Միջերկրական ծովից Հնդկաստան տանող



ամենակարճ առևտրական ճանապարհով օգտվելու հնարավորությունից։ Հարվածի տակ են գտնվում նրա կարևոր կոմունիկացիաները և հենման կետերը (Ջիբրալթար, Մալթա, Սուեզ, Սինգապուր և այլն)։ Այս ամենն ասում են այն մասին, որ իմպերիալիստական պետությունների հակասությունները հասել են իրենց ծայրագույն սրմանը։

---

Պատասխանատու խմբագիր՝
Դ. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

digitised by A.R.A.R.@

